ՄԻՏՔ ԵՒ ԱՐՈՒԵՍՏ

ԱՐԾՐՈՒՆԻ ԵՒ ՍՈՒՆԴՈՒԿԵԱՆՑ

— o —

Խորհ. Արուեստի մէջ (Թիւ 5—6) անցողակի կը պատմուի վէճ մը, որ տեղի ունեցած է Գրիգոր Արծրունիի եւ Գ. Սունդուկեանցի միջեւ:

Երիմեանի կաթողիկոսական ընտրութիւններու նախօրեակին է:

Մշակականները իրենց կողմէ պատգամաւոր կ'ընտրեն Սունդուկեանցը, իբրեւ համակիր Խրիմեանի: Պատգամաւոր ընտրուելէ յետոյ, Սունդուկեանց կը յարի «Մշակ»ի հակառա-

...

«Մարդիկ համոզուած էին, որ դուք անուղղելի էք, ես էլ համոզւում եմ այդ բանին»:

«Ձեր հաշիւներն ինձ հետ ուրիշ նիւթերի վերաբերմամբ կը տեսնէք, եւ ես պատրաստ եմ իմ «պատկառելի» հասակում արժանաւոր ախոյեան լինել ձեզ. միայն Լուսաւորչի Սուրբ Գահը թող խաղաղ մնայ»:

## Հայրենիքի մասին

Վերջերս, հայրենիքի մասին, շատ կը գրեն համայնավար մտաւորականները: Եւ բոլորը կարծես ճիգ կ'ընեն սրբագրելու խօսքը, որով պարծենցան երկար ատեն.— «Բանուորները հայրենիք չունին»:

Առաջին «բեկում»ը տեսնուեցաւ Ստալինի յայտարարութեան մէջ, քանի մը տարի առաջ.— «Թիզ մը հող չենք տար մեր երկրէն»: Ուրեմն սահման ունէր այդ երկիրը, եւ այդ սահմաններուն մէջ քշուած՝ բանուորը կ'ուրախանար իր հողերուն անձեռնմխելիութեամբ:

Երկար ժամանակ մը, «հայրենիք» բառը քշուեցաւ հրապարակէն: Կը գործածուէր «երկիր», եւ ստեղծուեցաւ, հայրենասիրութեան փոխարէն, երկրասիրութիւն մը: Այս բառը, սակայն, ի՞նչ կը փոխէր կացութենէն,

...

ԱՐԱՄԱՅԻՍ ՍՐԱՊԵԱՆ

ԱՐՈՒԵՍՏ ԵՒ ԱՐՈՒԵՍՏՈՐ

— o —



## Ճիչեր

— o —

Ձա՛յն տուր ինծի, ո՛վ հայրենի սգաւոր խրճիթ, որովհետեւ այս օտար ափերուն վրայ, անտուն եւ թափառական, ամէն մէկ խրճիթ գիշեր է ինծի համար...

Լիալուսինը իր վառ շողերով ամէն գիշեր, ծեքծեքումներ կ'ընէ, եւ տարագրի պատուհանէս բոնի ներս մտնելով, արծաթ ցոլքեր կը ցանէ իմ խաւար սենեակիս մէջ:

Ձա՛յն տուր ինծի, ո՛վ հայրենի երգիք, շատ երկար տեւեց լռութիւնդ եւ սուգդ սեւ մոխիրներու ու դիակներու վրայ: Վերցո՛ւր գլուխդ, ու նայէ մէկ անգամ աստղերուն պլպլուն որ կապոյտ ծովուն խորը մարգարիտներ են կարծես:

Խօսէ՛ անոնց քու տառապանքէդ բառ մը միայն, քու անցեալէդ խօսք մը միայն, ի խորոց սրտի...

Հաւատա՛, որ հայրենի երգիք, կեանքի բոլոր վայելքները մէկդի դրած եմ... Ու իմ երիտասարդի քասնըհինգ գարուններէս արցունքներ կը կաթկթին, ինչպէս անձրեւը տխրատեսիլ աշունին:

Տրտում եմ, ու տխուր, խաւար է ինծի համար աշխարհը բոլոր, ծով վիշտեր ունիմ ու բոցեր որ կ'այրեն զիս: Զի օտար է այստեղ հայրենի տուն, եւ ես տարագիրս՝ կրակի լեզու: Վարդերն ինծի համար տատասկ են դարձեր: Ամէն բան փուշ է եւ եղիճ թունահոտ:

Հայրենի երգիք, սրբութիւն սրբո՜ց, ձայն տուր ինծի ի խորոց սրտի:

Զի գիշեր է նորէն, աստղեր հատ հատ, պլպլալ սկսան իմ գլխուս վերեւ: Լուսնկան տխուր, իմ սրտիս նման նոր հարսի մը պէս իր սուգը կուլայ...

Հայրենի խրճիթ, ես ի՜նչպէս չոգեւոր քու ծոցէն հեռո՜ւ, ծարաւ աղբիւրիդ...

Ձայն տո՛ւր ինծի աստղերուն լեզուով կամ լուսնի լուսով, ի խորոց սրտի...

Ձա՛յն տուր ինծի, հայրենի երգիք, սարերուդ մատաղ, լեռներուդ ընծայ: Ձայն տուր որ ես անոնց կարօտ առնեմ ի խորոց սրտի...

Ս. ՀՐԱՏԻՆ

դրողը, կը յաւելու.— «Բէքլամը ծաղիկն է արդի կեանքին, ան յատկանիշն է մեր քաղաքակրթութեան, բէքլամն է որ ...

...

## «ՅԱՌԱՋ»Ի ՊԱՏՄՈՒԱԾՔՆԵՐԸ

### ԼԵԼՕ

— o —

...

(6)

(Շար.)

կան անհրաժեշտութեանց կը ստորադասէ ուրիշ ամէն բան՝ նիւթական եւ բարոյական կեանքի մէջ »:

Մուսոլինին մէկ խրատ ունի անոնց որ չեն ուզեր զինապաշտ կոչուիլ.— «Մտիր կուսանաց վանք»:

## Ո՞վ սպաննեց «Փալաս»ի տնօրէնը

*« Մաթէն » երկար մանրամասնութիւններով կը պատմէ թէ գտնուած է Փարիզի քաղաքապետական խորհրդի անդամ եւ «Փալաս» թատրոնի տնօրէն Տիւֆրէնի սպանիչը: Մէկ տարիէ ի վեր Ապահովութեան Տեսչութիւնը եւ ոստիկանութիւնը քննութիւններ կը կատարէին այս մասին եւ քանի մը ամիս առաջ ճշդած էին ոճրագործին ինքնութիւնը, բայց գաղտնի կը պահուէր ամէն բան: Մարդասպանը 23 տարեկան է եւ կը կոչուի Փոլ Լապոռի: Ունի երկու մեղսակիցներ, որոնց մէկը սպանութեան գործիքը ծախած է, միւսը՝ նաւագի համազգեստ մը: Մարդասպանը նշանաւոր եղած է իր հակարնական հակումներով:*

### ՎԷՃ՝ ԳԻՒՏԻ ՄԸ ՇՈՒՐՋԸ

*Քանի մը օր առաջ գերման բժիշկ մը, Տոքթ. Պրէմէր, կը ծանուցանէր թէ գտած է խլիրդին (քանսէր) մանրէն, «սիֆոնոսփորա փոլիմորֆա»: Խումբ մը գերման գիտնականներ քննութիւն կատարելով, յայտնեցին թէ ճիշդ է որ Տոքթ. Պրէմէր նոր մակաբոյծ մը գտած է, բայց կասկածելի է անոր արժէքը՝ իբրեւ աղբիւր խլիրդի:*

*Ֆրանսացի գիտնական մըն ալ, Լուի Ռէվէյիս, կը յայտարարէ թէ ինք շատոնց գտած է գերմանացի գիտնականին յիշած մանրէն, թէ 18 տարիէ ի վեր կ'ուսումնասիրէ եւ դեռ վերջնական եզրակացութեան մը չէ յանգած:*

350 ՀՈԳԻ ԹՈՒՆԱՒՈՐՈՒԵՑԱՆ Լոս Անճէլէսի մէջ (Քալիֆորնիա), ի պատիւ 2000 նախկին ռազմիկներու տրուած ճաշի մը ատեն: Շատ ծանր է յիսուն թունաւորեալներու վիճակը:

## ՈՒԽՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ ԱՆԴՐԱՆԻԿԻ ՇԻՐՄԻՆ

Այսօր, կիրակի Սեպտեմբեր 9ին, ժամը 2·30ին
Կազմակերպուած ՀԱՅ ԿԱՄ. ՄԱՐՏԻԿ. ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

*Մասնակցութեամբ բոլոր կամաւորներուն եւ մարտիկներուն, Հայ Սպայից, Զափահաս Որբերու Միութիւններուն, ինչպէս նաեւ հայրենակցական եւ երիտասարդական բազմաթիւ խմբակցութեանց:*

Ներկայ կ'ըլլայ ԶՕՐ. ՂՈՐՂԱՆԵԱՆ

խօսք պիտի առնեն.— կամ. մարտիկ. միութեան կողմէ *Դոկ. Տ. ԲԱՂԴԱՍԱՐԵԱՆ*, Հայ Սպայից Միութեան կողմէ *Գլխապետ Ռ. ԹԱԴէՈՍԵԱՆ*, Չափ. Որբերու Միութեան կողմէ *Պ. Ա. ԴԱԲԻԿԵԱՆ*, եւ ուղերձներ զանազան Հայրենակցական Միութիւններու կողմէ:

*Հաւաքման վայր.*— փլաս կամպէթայի նայող փէռ Լաշէզի մեծ դրան առաջ: Թափօրը ժամը ճիշդ 2.30ին այդ տեղէն կը շարժի դէպի Հերոսի գերեզմանը:

ԲԱՑՈՒԱԾ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆԸ



## ԳՈՅԱՄԱՐՏ օրացոյց 1935

Հրատարակութիւն Հ. Յ. Դ. *ՄԱՐՍԷՅԼԻ ՊԱՏԱՆԵԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ*
*ԼՈՅՍ ԿԸ ՏԵՍՆԷ ՍԵՊՏԵՄԲԵՐ* 15*ին*

1.— Ազգային քննական պատմութիւն, Բագրատունեաց Հարստութենէն մինչեւ Ռուբինեանց Հարստութիւն:

2.— Ամփոփ նկարագրութիւն ազատագրական պատմական դէպքերու եւ դէմքերու, առանց կուսակցական խտրութեան:

3.— կրօնական տօներու լիակատար յիշատակութիւն:

4.— Օրացոյցին ճակատը զետեղուած է Հ. Յ. Դ. Զինանշանը՝ եզերուած զոյգ եռագոյնով, մէջտեղը *«ՀԱՅԿԱԿԱՆ ԳՈՅԱՄԱՐՏԸ»* (գծուած Հ. *Ալեքսանեանի* կողմէ):

5.— Օրացոյցին ներքեւ *Դաշնակցութեան Նրբորդութիւնը:*

7.— Ձախ կողմը *Միքայէլ Վարանդեան, Մ. Նալբանդեան* եւ *Թումանի մարտական խումբը:*

7.— Աջ կողմը *Հայր Աբրահամ, Գամառ Քաթիպա, Բասէնի* եւ *Տէլիպապայի ֆէտայիներու խմբանկարը:*

8.— Օրացոյցին մէջ զետեղուած են անցեալ տարուան կողքին վրայի նկարները եւ եօթը նոր նկարներ:

*Հայրենակիցներ, չզրկուելու համար այս գեղեցիկ հրատարակութենէն դիմեցէք այժմէն Միութեան հասցէին՝*

*Karnig Antikian, 49, rue Nationale, Marseille:*

Գին՝ Մարսէյլի 5 ֆր.: գաղութներ 5.50: պալքաններ եւ Սուրիա 5:





### ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

*«ՍԻՓԱՆ» Երգչախումբէն յիշատակ մը երգասէր հայրենակիցներու: Հրապարակ ելան եւ կը ծախուին «Սիփան»ի կողմէ երգուած՝* «Խնուս գեղի մէջտեղը» *եւ* «Հայկ ու վարդան» *տետրերը՝ 12 ֆրանք հատը:*

*Դիմել՝* Արթինեանի, 26 rue Lesage, Paris(*20*), *և* «Սիփան»*ի քարտուղար՝* Ն. Տակուեանի՝ 9bis rue Mme Curie Bagneux, (Seine):





**Le Gérant: H. STEPHAN**

**17, Rue Damesme, PARIS (13e)** **Imprimerie A. DER (AGOPIAN)**

**ՅԱՌԱՋ** ԿԸ ԾԱԽՈՒԻ ԳԱՍՊԱՐԵԱՆԻ ՆՊԱՐԱՎԱՃԱՌԱՏՈՒՆԸ
2, Rue Blanqui. Paris (13):

## ՎԻՔԹՕՐ ՀԻՒԿՕ ԵՒ... ԳԼՕՏ ՖԱՐԷՐ

oooo

ԽՄԲ. — «A propos d'une belle barbe» սրամիտ վերնագրին տակ, երիտասարդ գրագէտ Պ. Ժաք Պէրֆալ հետեւեալ քրոնիկը գրած է La Concorde օրաթերթին մէջ:

Դիւրին է մեռնողները անպատուել: Պ. Գլօտ Ֆարէր դժուարութիւն չքաշեց հարուած մը իջեցնելու Վիքթոր Հիւկոյի քաղաքական եւ գրական անձին: Բազմաթիւ խնկական գրագէտներ զինքը խստօրէն կարգի հրաւիրեցին եւ Լիւսիէն Տէգավ մէկէ աւելի քօղարկուած բառերով անիկա նմանցուց տղու մը որ իր մատը կը ծծէ:

«Ի՞նչ կ'ուզէք որ ըլլար, կը գրէ ինծի յայտնի խորհող մը, Գլօտ այնքան տարիքը առած է ու իր առողջութիւնը, հակառակ երեւութական կորովին. այնքա՛ն խախուտ է որ!» Այս իրաւացի խօսքերը, սակայն, չեն կրնար պէտք եղած կերպով պատժել մեծամտութիւնը՝ արժանիքը չափազանցուած այս գրագէտին, այսօր հիւանդ...

...կախ, Փիէր Լօթիի ոճերուն «հետեւորդ»», եւ որուն գործերը կասկածելի բարոյական մը ունին:

Ապուշութիւն պիտի ըլլար պաշտպանութիւնը փորձել մեծ մարդու մը, որուն պէտք էր հետեւէր այսօրուան կատաղի եւ դառնացած հակառակորդը, նոյն իսկ եթէ ընդունինք որ հեղինակականութիւնը մարդկային արարածի մը վայելուչ բան չէ: Ահա թէ ինչո՞ւ արդէն Գլօտ Ֆարէրի կը յանձնարարեմ այդ հեղինակութիւնը: Գիտենք խղճալի արժէքը Գլօտ Ֆարէրի, վիժած վիպագիր, որ իր հասարակ արձակին մէջ Ֆրանսերէնի սխալները կատաղօրէն կը խառնէ ամէնէն օթեկ մտածումներուն: Ու խորհիլ որ Փիէր Լուիսին բարեկամն ալ եղած է ան!

Այդ բարեկամութիւնը պիտի արգարանար, եթէ իր կեղծ յաջողութիւնը այսքան ծանօթ չըլլար: Երբ խանդավառութեամբ ընդունեց Պատերազմիկ Գրագէտներու Նախագահութիւնը, ամէնքս ալ գիտենք թէ պատճառը այդ նախագահութիւնը հանելու միջոց մը նկատելն էր: Ու այս մարդուկը Ֆրանսական Ակադեմիին մէջ մտնել կը յաւակնի հիմա, որով-...

...փոփոխութեան ենթակայ:

## ՄԻՋԵՌ ԵՒ ԱՐՈՒԵՍՏ

### Պանդուխտի երգեր

●●●●

Պանդուխտի երկու հրաշալի երգեր, ահա, — ճաշակ մը տալու համար այն ջերմ ու վառող զգացումներուն մասին, որոնք դեռ երկու տասնեակ տարի առաջ կը հրդեհէին Հայաստանի գեղջկուհիներուն սիրտերը: Կամ համեմատութեան դնելու համար արդի հայրենաբաղձիկ երգերու հետ:

1.

Ստամբէօլ քեաղաք վէր Սեւ ծովերաց,<br>
Վաթան կուրխեւ վէր կարիքներաց,<br>
Կարիքիս մեռնեմ ուր նամխըներաց,<br>
Որ չէրթէր մնէր իտեւ սարերաց:

Էլայ պանցր էօղէն, ինգեայ անուշ<br>
քուն,<br>
Կոտրաւ սրտիս սուն, էլայ էրերուն,<br>
Խիեալով կացի կարիքիս սիրուն,<br>
Գիշեր ցերեկով մնացի արթուն:

Ընգեայ թաղէ թաղ ալչէմ նարեցի,<br>
Տվի թաքաղէմ, թղթիկ գնեցի,<br>
Շողշողուն մտքերս կալամ արեցի,<br>
Իմ սրտիս դարտեր ինե գրեցի:

Վանայ չիւմ Պօլիս մէկ օրօխկիցի,<br>
Շատ կարիք կուրբաթ ոտով դառցուցի,<br>
Արե՛, ջան, արե՛, արե՛ եար, արե՛,<br>
Վալլահ կը մեռնեմ, խոցերս ի խասե:

2.

Կարիք եմ, ձեր դուռն եմ իկե,<br>
Ձեր խուզիւ խամար գելս ձիկ իրիշ-<br>
կէք,<br>
Օրէն խացմ ջրայ կտրեցէք,<br>
Թէ որ էլ ուզեմ, ձիզ քեարկոծեցէք:

Որ չը մեռայ, ձեր նավէզ կ'անեմ,<br>
Որ մեռայ, ձիկ տարէք թաղեցէք,<br>
Նաշիկս Առզրմայ պիրէք,<br>
Լէշիկս ինե դրեցէք,

Տարէք իմ եարոջ դռնէն ընցուցէք,<br>
Դուռ տիէք, եար տիւս խանէք,<br>
Ծովծվան աչքեր լացուցէք,<br>
Ջավրէս ծոցէս խանեցէք,<br>
Ինոր ծովծվան աչքերն սրբէք:

### ՎԷՊԻՆ ԿԱԶՄԱԼՈՒԾՈՒՄԸ

Ֆրանսացի գրող մը, Ժան Ռիշար-Պլոշ, կ'ողբայ վէպին կազմալուծումը: Երկրէ երկիր, կը տարբերի վէ-...

(*) Մեր փառասերդ ընթերցողներու կը հասկնան թէ barbe բառը հոս ի՞նչ երկդիմի իմաստով գործածուած է:



...մէթր, 72, Աբրահամինը՝ 9 մէթր 094: Ինչպէս կը տեսնէք, հասակին մեծութիւնը հետզհետէ կը նուազի, այնպէս որ երբ մինչեւ Ցուլիոս Կեսար կուգայ, արբան ծիրանազգեստ կայսեր կուտայ 1 մէթր 62 մեծութեամբ, հասակ մը:

Ժողովուրդը եւս համոզուած է թէ իր նախահայրերը մեծահասակ էին, այնպէս որ հէքեաթներ կը հինէ այդ համոզումով:

Քիւվիէ քանդեց բոլոր այդ կարծիքներուն հիմը: Ճշմարտութիւնը այն է որ մեր նախահայրերը այնքան բարձր չէին հասակով, որքան մենք: Հռոմէական հասակը 1 մէթր 47 էր, ...

...վերջին ուսումնասիրութիւնները կը հաստատեն որ հասակի անսովոր բարձրութիւնը հետեւանք է ցեղային վատասերումի, հիւանդութեան, — ուրեմն անբնական երեւոյթ է, բայց երբեք պանծալի:

## ՀԱՅԱՍՏԱՆ

### ԻՍՏԻ - ՍՈՒ

Փրոֆ. Ա. Մեյիք - Ադամեան կը գրէ Խորհ. Հայաստանի մէջ.—

Դարալագեազի հանքային աղբիւրները, որոնք կը գտնուին արեւելեան Արփաչայի ակունքին մօտ, քրտական Իստի - Սու գիւղէն ոչ - հեռու, իբրեւ Հայաստանի տաք աղբիւրները, հի-...

...Աշխատանքի իրաւունքը, ըստ հընութիւն, երկու քաղաքակրթութիւններու միացման գիծն է:

Առէք քանակը եւ քաշեցէք ուրեմն այդ գիծը:

ԱՐՇԱՒԻՐ ԽԱՆԷՏԱՆԵԱՆ

ՄԵՐ ՀԱՅԱՁԻՆՋ ՍԱՐՍԱՓՆԵՐԷՆ (4)

## ՔԱՆԱՅ ԼԵՌ-- (ՏԱՐՕՆԻ ՇՐՋԱՆ)

»»»··«««

...իրիկունը մեր Թաքաւորցէն զուրս ե-...ք, Քանայ լերան վրայ հարիւրա-...ր կրակներ կ'երեւան, գիտենք որ ...րդէն ապստամբներն են հոն:

...րենց կոչման բարձրութեան վրայ:

Մուշ քաղաքի ապստամբները հասան Քանայ լեռ: Այդ օրերուն, երբ դեռ թալանը առատ էր, Քիւրտերը չփորձեցին, չհետաքրքրուեցան Քանայ լեռ...

իւրաքանչիւր պարագայ, և ճշդել թէ վայրկեանը եկած չէ՞ մեղմացնելու կարգ մը տրամադրութիւններ կամ բարեփոխելու միջազգային հսկողութեան ձեւակերպութիւնները »:

Պելժիոյ պատուիրակն ալ հաստատեց որ եւ է ընդհանրացման, յայտարարելով թէ՝ այդպիսի փորձ մը նոր վէճեր պիտի յարուցանէ Եւրոպայի մէջ: Իռլանտայի ներկայացուցիչը պահանջեց յարգել փոքրամասնութեանց վերաբերեալ տրամադրութիւնները որոնք հաստատուեցան պատերազմի դաշնագիրներով: Ընդհ. վիճաբանութիւնները փակուած ըլլալով, նախագահը վերջին խօսքը տուաւ Լեհաստանի պատուիրակին, որ յայտարարեց.

— Վիճաբանութիւնը լուսաբանեց ամէնքը. անոր շնորհիւ շատ մը պետութիւններ աւելի լաւ հասկցան մեր դիրքը: Գալով մէջտեղ դրուած փաստարկութեանց, մենք կանխաւ ժխտեցինք անոնց մէկ մասը եւ կրնանք ժխտել ուրիշներ ալ: Բայց կը նախընտրենք հաստատել թէ բարձրացած ձայներուն մէջ ամէնէն կարեւորները հակառակ են մեր բռնած դիրքին: Մենք կրնայինք գոհանալ մեր տեսութեան կուսակիցներու թիւով, բայց այդ բաւական չպիտի ըլլար, որովհետեւ անմիջական արդիւնք մը չպիտի ստանայինք եւ որ եւ է յառաջդիմութիւն չպիտի կատարուէր: Այս պատճառաւ, ուժգնօրէն պահելով մեր դիրքը, տեղի կուտանք նախագահին թելադրութեան եւ չենք պահանջեր որ քաղաքական յանձնաժողովը իր վճիռը յայտնէ քուէարկութեամբ »:

Այսպէս ուրեմն, Լեհաստան ոչ թէ կը հրաժարի իր բռնած դիրքէն, այլ առժամապէս ետ կ'առնէ բանաձեւը, իրեն վերապահելով կրկին յուզել զայն յառաջիկային: Կը կարծուի թէ խնդիրը Ա. Դ. խորհուրդին պիտի յանձնուի յառաջիկայ յունուարին:

## Նախագահ Րուզվէլթ կը խնդրէ

### ԴԱԴԱՐԵՑՆԵԼ ԳՈՐԾԱԴՈՒԼԸ

Նախագահ Րուզվէլթ ուրբաթ օր ուղղակի միջամտեց հիւսուածեղէնի բանուորներու գործադուլին, խնդրելով բանթողներէն որ վերսկին աշխատանքը: Կը կարծուի թէ բանուորները պիտի համակերպին այս առաջարկին, մանաւանդ որ նախագահին կողմէ նշանակուած իրաւարար մարմինը նպաստաւոր պայմաններ մշակած է: Գործարանատէրներուն ալ յանձնարարուած է որ դժուարութիւն չյարուցանեն եւ անմիջապէս բանան դուռները: Արդէն բանուորներու մեծ մասը վերսկսած է աշխատանքը:

## Կոմինտէրնի համագումարը նորէն յետաձգուեցաւ

Կոմինտէրնի (Գ. Միջազգային) 7րդ համագումարը, որ կը ձգձգուէր երկար ատենէ ի վեր, յետաձգուեցաւ 1935ի առաջին վեցամսեային: Այս առթիւ յանձնարարուած է այժմէն քննել օրակարգի խնդիրները, «էնթէրնասիոնալ Կոմունիստ»ի եւ ուրիշ համայնավարական թերթերու մէջ:

Կը կարծուի թէ յետաձգման պատճառն է խորհրդային իշխանութեան արտաքին քաղաքականութիւնը, որ ուղղափառ գիծէն շատ ու շատ շեղեցաւ վերջերս: Կարմիրները բոլորովին դժգոհ են Լիթվինովէն, որ իր ստորագրած միջազգային դաշնագիրներուն մէջ յանձն կ'առնէ ետ կենալ համայնավարական քարոզութիւններէ: Կոմինտէրնը կ'ուզէր բացէ ի բաց քննադատել արտաքին գործավարութեան քաղաքականութիւնը, բայց Ստալին թոյլ չտուաւ: Միւս կողմէ, Կոմինտէրնի վարիչը կ'ուզէր սեպտ. 19ին հրաւիրել համագումարը, բայց Ստալին նորէն միջամտեց, քանի որ ճիշդ այդ օրերուն ձեռնարկներ կը կատարուէին Ժընեւի մէջ, Խ. Միութիւնը Ազգերու Դաշնակցութեան անդամագրելու համար:

Ինչպէս յայտնի է, խորհրդային մամուլը այս ձեռնարկներու մասին լռութիւն պահեց մինչեւ սեպտ. 8: Երբ անդամակցութիւնը քուէարկուեցաւ, այն ատեն Մոսկուայի հեռագրական գործակալութիւնը չոր հեռագրով մը հաղորդեց լուրը, համառօտակի պատմելով սեպտ. 9էն մինչեւ ընդունելութեան օրը կատարուած բանակցութիւնները:



*աղբիւրներ, որոնց ջուրերուն նմոյշը Երեւան բերուած է քաղաքական քննութեան համար:*

*Հանքային այս աղբիւրներուն մօտ կը գտնուի արժէքաւոր բուժարար ցեխ մը: Առաջին անգամ մեր խորհուրդով կարգ մը հիւանդներ օգտուեցան այդ ցեխէն, ճիշդ աղբիւրներուն մօտ:*

*Այս բոլորը կը կատարուէին նախնական պայմաններու մէջ, որոնք ի հարկէ որոշ չափով բացասական ազդեցութիւն ալ կը ձգէին: Այսուհանդերձ կարելի է ըսել թէ բոլոր հիւանդները կը հեռանային գոհ եւ երջանիկ:*

*Տարակոյս չկայ, որ հանքային ջուրերու բազմաթիւ եւ հարուստ իր աղբիւրներով, բուժարար ցեխով, հրաշալի կլիմայով Իսափ – Սուն կ'ունենայ մեծ ապագայ:*

*Անհրաժեշտ է միայն, առանց յետաձգելու, կատարել երկրաբանական, ջրահաւաքման, լոգարանի շէնքին եւ այլ շինութիւններու վերաբերեալ աշխատանքները եւ նշանակել մասնագէտ բժիշկներ բնաբուժական այս արժէքաւոր կայանին համար:*



### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Պ. Սեդրակ Գարակէօզեան իր խորին շնորհակալութիւնները կը յայտնէ բոլոր անոնց ի մասնաւորի «ՅԱՌԱՋ» օրաթերթի, որոնք իր կնոջ Տիկ. Մառի Ս. Գարակէօզեանի անցուցած ցաւալի *արկածին* առթիւ իրենց ցաւակցութիւնները յայտնած էին:

*Բաշան,* 21 Սեպտ. 934

### ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

*ՍՏԱՑԱՆՔ*

*ԿԱՐՏԱՆ, Լ. Գ.*— 102:
*ԼԱ ՍԻՕԹԱ, Ղ. Կ.*— 35:
*ՓՕՆ Տ'ՕՊՆԱ, Ա. Կ.*— 35:
*ԼԻՈՆ, Գուրծ.*— 700:
*ԹՈՒԼՈՒԶ, Խաչ.*— 60: *Կարգադրեցինք:*
*ՓԱՐԻԶ* (10), *Փափ.*— 110:
*ՕՊՆԱ, Բիւզ.*— 70:
*ՍԷՆ ՓԻԷՐ ՕՊՆԱ, Եսրկ.*— 35:
*ԱԼՖՈՐՎԻԼ, Տէմ.*— 35:
*ԼԻՈՆ, Փիլ.*— 35:
*ՍԷՆ ՄԱՐԹՕՐԻ, Բէօլ.*— 80:
*ՎԱԼԱՆՍ, Գուրծ.*— 233:
*ԱՌՆՈՒՎԻԼ, Խ. Գ.*— 35:

**Le Gérant: H. STEPHAN**

**17, Rue Damesme. PARIS (13e)**

**Imprimerie A. DER (AGOPIAN)**

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆ

— o —

Այս գիշեր խորախորհուրդ ու մթին
ձորերուն մէջ կարկաչահոս ջուրերու
ձայնը կը լսեմ, որ կ'անցնի անհղա-
գոռ եւ ուժգին շառաչիւնով մը:
Երակներուս մէջ արիւնի ճառողին
եւ խանդավառող քաղցրութիւն մը կը
... այսօր... Անպատմելի ուրա-

[...]

բաց: Զարկ ու անցիր, գաղափարա-
կան երիտասարդութիւնը քեզի հետ է
միշտ:

ԼԵՒՈՆ ԳԵՂՈՒՆԻ

# ՔԱՆԻ ՄԸ ԴՐՈՒԱԳՆԵՐ

Դաշնակցութեան օրը ընկերներուս
համար ուխտի օր է, ուխտի ու նաեւ
վերյիշումի մեր 44 տարուան պատ-
մութեան եւ հերոսական պայքար-
ներու: Եթէ Դաշնակցութեան երկու
տասնեակ տարիներու առաջուան
պատմութիւնը քրքրելու ըլլանք, կը

[...]

Սօղոն, որ յարմար առիթին կը սպա-
սէր որպէսզի բոլորն ալ սպաննէր,
երբ մէկը իր շալակն առած էր քիչ մը
ետ կը մնայ, մինչդեռ առաջինները
հարիւր մեթրի չափ հեռացեր էին,
գետին կը տապալէ շալկած Քիւրտը
եւ կոկորդէն բռնելով կը խեղդէ: Իր
աղաղակներուն վրայ ընկերները ետ
կուգան, բայց մինչ այդ Սօղոն կ'առ-
նէ սպաննած Քիւրտին հրացանը եւ
բոլորն ալ կը սպաննէ ու ձիներուն
մէջ կը թաղէ:

⁂ Ախլաթցի Թուրքի մը տղան իր-
րեւ կամաւոր կը գրուի որ Աղբիւր
Սերոբին դէմ կռուի: Կ'երթայ եւ Բար-

[...]

Քիւրտերու պէս նամարդ չեն:

ԱՐՄԵՆԱԿ ՅԱԿՈԲԵԱՆ

# Դաշնակցութիւն

— o —

Դաշնակցութիւն, դուն իմ պաշտելի
հայր. հազիւ տասնըութ գարուններ
բոլորած էի, երբ քեզի դիմեցի քու
երկաթէ դուռէդ ներս մտնելու հա-
մար, բայց դուն ինծի ըսիր.

— Տղաս, տարիքդ դեռ փոքր է,
քանի մը տարի ևս սպասէ:

[...]

ներուդ:

ՎԱՀԱՆ ԽԱՉԱՏՐԵԱՆ

# ՑԵՂԻՆ ԿՐԱԿԸ

— o —

Հեռո՛ւ, հեռո՛ւ փխտութիւնն ու
ամօթը՝ մեզմէ եւ մեր եօթը սե-
րունդէն:

Մենք ուխտաւորնե՛ր ենք արիւ-
նածին տօնին, մեր անուրններուն
ձայնը՝ գիշերային շեփորն է՝
կարմրածագ արշալոյսն աւետող,
համբերութիւնը մերն է միայն,
որովհետեւ մեր ուսերուն վրայ
Երկաթ շալկած ենք:

Ռ. ԶԱՐԴԱՐԵԱՆ

Հայոց աշխարհի բոցափայլ կար-
միր կրակը, արշալոյսին հետ դէմ
դիմաց կ'ուզէ այսօր, հոկտեմբերի
առաւօտ, իր բոցերը հովին տալ:

Զի արշալոյսը կարմրածագ ըլ-
լալով կարմիր է, քան ցեղին կրակը հը-
րաշափառ:

Կրա՛կ, որ իր հրեղէն ծնունդը ա-
ռաւ մեր աշխարհի խոնարհ ու հայ-
րենանուէր սիրտերէն, եւ ամբողջ կէս
դար, յաւիտենապէս յեղափոխական
աւազանին մէջ ցնծութեան կանչերով
դղրդացուց, հովտաց ու բարձրաբերձ
լեռներէն մինչեւ ձորերը մենաւոր:

Հի՛ն, հին դարերու համճարեց ժո-

[...]

Ն. ԳԱԼԷ

Ո՛ւժ քաղաքական հասունութեան,
ո՛ւժ գիտական պաշարի, ո՛ւժ վար-
չական ընդունակութեան, ո՛ւժ տն-
տեսական նախաձեռնութեան, ո՛ւժ
քաղաքակրթական դերի ու կոչումի,
բայց ո՛չ անհատական, այլ հաւա-
քական ու կազմակերպուած նկարա-
գրի ու բարոյականի — ահա՛ այն ա-
մէնը, որոնցմէ կախուած են Հայու-
թեան փրկութիւնն ու ապագան:

ՅԱՐՈՒԹԻՒՆ ՇԱՀՐԻԿԵԱՆ

# Գաղափարիս խորանին առջեւ...

Մօտ տասնեակ մը տարի է որ ես
քու չէմքէդ գլուխս խոնարհաբար ու
աջ ձեռքս վեր՝ բռնած մէջքէն, սուրբ
խորանէդ ոտքս ներս դրի, երդում մը
ընելով Աստուծոյս անունին:

Ու այդ ուխտէս մինչեւ յաւիտեան
գերեզմանս, ջահդ միշտ վառ պիտի

[...]

Ճիշդ է, մենք կրեցինք սոսկալի
հարուած, անհամեմատ աւելի զոհեր
տուինք, քան մեր թշնամին, կորցրինք
մեր լաւագոյն ընկերներից շատերին,
բայց մեր ժամանակաւոր պարտու-
թիւնը, մեր թշնամիների հրնուանքը
մեզ չեն վհատեցնի... Հազարաւոր
դժբախտների յուսահատական ճիչե-
րը պահանջում են մեզանից արդար
վրէժխնդրութիւն, մեր նահատակ-
ուած ընկերների ստուերները կոչում
են մեզ դէպի անձնազոհ գործունէու-
թիւն:

ՌՈՍՏՈՄ

Թէ՛ թշնամուն եւ թէ՛ բարեկամին
յարգանք ու պատկառանք ներշնչողը,
դժբախտաբար, դեռ *կոպիտ ուժն է*:
Եւ մի ազգ — եթէ ուզում է մնալ
յարգուած, եթէ չի՛ ուզում կորչիլ —
պէտք է լինի զէնքի ընդունակ, մի՛շտ
պէտք է լինի կազմ ու պատրաստ ինք-
նապաշտպանութեան համար, մանա-
ւանդ քաղաքական ցնցումների վայր-
կեաններում:

ՆԻԿՈԼ – ԴՈՒՄԱՆ

# ԵՐԷԿ ԵՒ ԱՅՍՕՐ

Զարթիք, փրկեալք արեամբ
Եւ տուք գփառս փրկողին...

Լո՛ւռ...
Արիւնափառ օրերու արիւնաներկ
մշտակները նոր թափով մը կը խլր-
տին, կը յուզուին նորէն այս երեկոյ:
Հին վէրքերը կը կսկծան, ակնադ-
րիւրները կը թրջին ու մոլեգին կա-
տաղութեամբ մը, կճրտացող ակռա-
ներուն հետ...

[...]

երախտագիտութեան սրբազան պաշ-
տամունքի պարտքը կը հաղորդէ...

Այսօր ազատութեան անհամար մե-
ռելներուն անմահութիւնը կը պատա-
րագէ...

Ալէլուիա՛, ալէլուիա՛...»:

×

[...]

արժէքներէն:

Համր՝ ձեր խուլ յարկին տակ, ձեր
խուլ անկողնին մէջ...

Թշուառնե՛ր...

[...]

հայ դրօշակին...:

Ու դարձեալ մինակ էինք, Սասու-
նէն Խանասոր, Սիփանէն Նեմրութ,
Մասիսէն Բիւրակնեանք ու Տաւրոս

[...]

մկրտուեցանք:

Մեր բանակները անյաղթ են ու
միշտ պատրաստ: Մեր դրօշակը նուի-
րական է ու յաւիտենական:

[...]

ներուն, եղբայրներուն, որոնք մեր
յոյսի եւ լոյսի ճամբաները բացին:

Ուխտի օ՛ր է... «դէպի կռիւ»:

Մեր ուխտը մեր կռիւն է. «կռիւ,
յարատեւ կռիւ», ոչ մէկ դադար, ոչ
մէկ նահանջ... մինչեւ վերջնական ու
վճռական յաղթանակը մեր...

ԱԶԳԻՆ

Արիւնը ինձ համար խորթ չէ եւ ո՛չ
էլ օտար:

Բայց ես կատարելապէս հասկա-
նում եմ եւ լիովին համակրում եմ,
երբ այդ արիւնը բաց է թողնում ժո-
ղովուրդներ տանջող կառավարու-
թեան զարկերակից:

ՆԻԿՈԼ – ԴՈՒՄԱՆ

